### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻՆ

Լեւոն Փափազեանի մահուան առթիւ, Տէր եւ Տիկին Քիւրքճեան, Տիկին Փանոսեան եւ Պ. Ա. Պօյնիքեան տասնական Ն. Ֆ. կը նուիրեն Կապոյտ Խաչի օգափոխութեան կայանին:

(Ստացանք «Յառաջ»էն):

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեց. Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.—

Ս. Ճէրանեանի մահուան առթիւ Սէնթ Էթիէնէն Պ. Երուանդ Համալեան փոխան ծաղկեպսակի կը նուիրէ տասը Ն. Ֆ., նոյն առթիւ փոխան ծաղկեպսակի Պ. Գրիգոր Գարաօղլանեան կը նուիրէ տասը Ն. Ֆ.:

### Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի «Վարանդեան» կոմիտէին եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Նոր Սերունդ»ին:

Նոյեմբեր 5ի Շաբաթ երեկոյեան ժամը 8·30ին Րիւ Տինուաի սրահին մէջ:

Կը նախագահէ Ընկ. Մ. ՄԻՐՋԷ

Կը խօսի Ընկ. Ս. ՍԻՍԼԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, կ'արտասանեն Օրիորդներ Ս. Կարապետեան, Շ. Ղազարեան, Ս. Սիսլեան, Թ. Ճերմակեան, Մ. Իւրլիխ եւ Է. Մուրատեան:

Կ'երգէ Օր. Ա. Կարապետեան եւ Փարիզէն յատկապէս հրաւիրուած Օր. Շաքէ Պէնկեան, ընկերակցութեամբ դաշնակահար Պ. Սիրանոսեանի:

Հայկական գեղջուկ պարեր Կրընոպլի Ֆ. Կ. Խաչի պարախումբին կողմէ, ղեկավարութեամբ Տիկ. Ա. ՍԻՍԼԵԱՆԻ:

Մուտքը ազատ է:

×

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նոյեմբեր 12ին:

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ:

×

### ՇԱԻԻԼԻ ՄԷՋ

Կը տօնուի Նոյեմբեր վեցին, Կիրակի օր, ժամը 16ին, դպրոցի սրահը, ընկերահամակրական ճաշով:

Կը խօսի՝ Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

×

ՎԻԷՆ.— Դաշնակցութեան 70ամեակը, կը տօնուի Նոյեմբեր վեցին:

Կիրակի կէսօրէ վերջ, Սէրֆլր Կաթոլիքի սրահը: Կը խօսի ընկեր Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

### Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Չորեքշաբթի, Մշակոյթի Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

### ՅԱԻԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆրանսահայ Կապոյտ Խաչի Շրջ. վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Ա. Զիթունիի ինչպէս նաեւ իր պարագաներուն, իր ամուսնոյն՝ ողբացեալ ՏԻԳՐԱՆ ԶԻԹՈՒՆԻԻ կսկծալի մահուան առթիւ:

### ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Ֆէսանվիլի օդափոխութեան կայանին կը նուիրեն.—

Պ. Է. Պետրոսեան յիսուն Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Զատիկեան (Իսի լէ Մուլինօ) երեսուն Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Օհանեան քսան Ն. Ֆ., Տիկին Տօլմաճեան, Տիկին Մաքրուհի Սերոբեան (Իսի լէ Մուլինօ), Տիկին Անուշ Սերոբեան (Իսի լէ Մուլինօ), Տէր եւ Տիկին Ո. Խայեան (Ալֆորվիլ), Տէր եւ Տիկին Լ. Խայեան, Տէր եւ Տիկին Արմաքչեան, Պարոն Մուքայէլեան տասնական Ն. Ֆ.:

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քաֆէ Քառէի վերնայարկը:

Պիտի դասախօսէ Պ. Թ. Գառնիկ:

Նիւթն է՝ «Հայ աղատագրական պատմութեան յեղաշրջումը՝ 1400էն 1950»

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔԻՆ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը ուրախութեամբ կը ծանուցանէ թէ վերաբացած է Հինգշաբթի օրուան իր հայերէնի դասընթացքը, որ երկար տարիներ տեղի կ'ունենար Սօտիէթէ Սավանթի մէջ, փորձառու ուսուցչուհիներով, եւ որ ընդհատուած էր յարմար սրահի մը չգոյութեան պատճառով:

Ներկայիս հայերէնի դասաւանդութիւնները տեղի կ'ունենան 215 Պուլվ. Սէն Ժերմէն, Փարիզ (7), մէթրօ Րիւ տիւ Պաք, շատ գեղեցիկ դասարանի մը մէջ, օժտուած դպրոցի յատուկ ամէն կարելիութիւններով եւ պարագով:

Ուսուցչուհին է Տիկին Ա. Զիթունի, որ ամէն Հինգշաբթի կէսօրէ ետք ժամը 2էն մինչեւ 5 կը դասաւանդէ եւ նոյնպէս կը կատարէ նորեկ աշակերտներու արձանագրութիւնները:

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը այս դոհողութիւնը յանձն առած է սիրայօժար, հայ դպրոցէ զրկուած թաղամասի մը երեխաներուն հայեցի դաստիարակութիւն տալու մտահոգութեամբ:

Յարգելի ծնողքներուն կը մնայ գնահատել այս ձեռնարկը, առաջնորդելով այս հայերէնի դասընթացքին իրենց զաւակները, զանոնք օտարացումէ կամ ուծացումէ զերծ պահելու համար:

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայաստանէն Արտաշատի շրջանէն Այրի Տիկին Սօնա Յովսէփեան Թրքահայ ներգաղթող, կը փնտռէ իր որդին Վահան - Մկրտիչ Յովսէփեանը որ 1944 թըւականին հայրենական պատերազմին ճակատ մեկնած եւ կորսուած է: Իր մասին լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկ պահել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանատունը, 15 Րիւ Ժան Կուժոն, Փարիզ (8):

Փարիզի եկեղեցւոյ դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները իր կրթ. ձեռնարկներուն համար: Պ. Կ. Գարակէօզեան տասը Ն. Ֆ., Յակոբ Տէր Անդրէասեանի մահուան առթիւ Պէլվիլ - Լիլայի դպրոցին:

Պ. Մկրտիչ Գազանճեան քսան Ն. Ֆ. Տիգրան Զիթունիի մահուան առթիւ: Տիկին Արմինէ Փափազեան տասը Ն. Ֆ. Տիկին Գալըպճեանի մահուան առթիւ: Պ. Ա. Փամպուքճեան տասը Ն. Ֆ. Օր. Մաղաքճեանի մահուան առթիւ:

### ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Լիոնի Ազգ. վարչութեան հրաւէրով, Կիրակի, Նոյեմբեր վեցին, կէսօրէ վերջ ժամը 15·30ին, Ազգ. Տան մեծ սրահին մէջ տեղի պիտի ունենայ ներկայացուցչական Բ. ժողով մը, որուն կրնան մասնակցիլ նաեւ Կրթ. եւ Մշակութ. կարեւոր հարցերով հետաքրքրուող բոլոր ծընողքները եւ սրտցաւ ազգայիններ եւս համաձայն 1960 Հոկտ. 9, Կիրակի գումարուած ներկայացուցչական առաջին ժողովի փափաքին: Ուստի ժողովը կը բացուի ժամը ճիշդ 15·30ին: Կը յանձնարարուի ճշդապահ ըլլալ:

ԴԻՒԱՆ ԱԶԳ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

նշտելի այս րսածը ճիշդ ըլլար, բառ- նիքսըն, ժողովուրդը ի՞նչպէս կրնար այդքան քանակութեամբ լքել ու հաւ- կիճ նետել վրաս. մանաւանդ որ փտած ալ չէին» ...

Թերեւս եթէ այս յայտարարութենէն յետոյ Նիքսըն Միչիկան վերադառնար՝ վարդի թերթերով ընդունուէր այս ան- գամ :

Ուրիշ ժողովուրդներու խելքին չի կր- նար հասնիլ ամերիկեան ընտրապայքա- րին ձեւը :

## ՍՈՂՈՄՈՆ ԹԵՀԼԻՐԵԱՆԻ

### ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ ԺՈՂՈՎ

Սողոմոն Թեհլիրեանի յիշատակի երե- կոյին կարգադիր յանձնախումբը ժողովի հրաւիրուած է այս Երկուշաբթի իրիկուն ժամը 20ին, Քաֆէ Քորայ :

### ՀԱՍՑԷԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ

Ֆ. Կապ. Խաչի Կեդր. վարչութիւնը կը յայտարարէ թէ իր նոր հասցէն է :

Croix Bleue des Arméniens de France
Comité Central
17, Rue Bleue, PARIS (9e)
Tél. TAI. 63-89

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տիկնանց Միութեան Որբ. Օգն. Մար- մինը շնորհակալութեամբ ստացած է Պ. Եդուարդ Մուրատեանէ յիշուն Ն. Ֆ., Պ. Արտաշէս Մուրատեանի եւ Տիկին Վիքթորիա Ստեփանեանի մահուան տա- րելիցին առիթով, ինչպէս նաեւ Ունճեան եւ Քէմհաճեան ընտանիքներուն յիշատա- կին :



## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Վերջերս մեր բաժանորդներէն, մանա- ւանդ Փարիզի եւ Լիոնի շրջաններէն, բո- ղոքներ կը ստանանք, որովհետեւ թերթը անկանոն կը ստանան։ Ոմանք կը կարծեն թէ յանցանքը մերն է։ Այս առթիւ կը ճշդենք թէ Յառաջը թղթատարին կը յանձնուի ԱՄԷՆ ԻՐԻԿՈՒՆ ԺԱՄԸ 17ԻՆ, առանց բացառութեան։ Անկանոնութեան պատասխանատուն ցրուիչ թղթատարներն են, ինչպէս մեզի յայտնեց 9րդ Թաղա- մասի կեդրոնական թղթատարը։ Խորա- պէս կը ցաւինք այս անկանոնութեան հա- մար որուն դարմանը դժբախտաբար մեր ձեռքը չէ։ Քանիցս բողոքած ենք, առանց վերջնական արդիւնքի յանգելու :

Կը յանձնարարենք մեր բաժանորդնե- րուն Ֆրանսերէն գրաւոր նամակով բողո- քել իրենց թաղին թղթատարական կեդ- րոնը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԱՐՄՆԻ

ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
ԿԻՐԱԿԻ, ՆՈՅԵՄԲԵՐ 20
ժամը 17էն կէս գիշեր
Հաճելի անակնկալներ

Կը խնդրուի ապահովել սեղանները հե- ռաձայնելով :

WAG. 38-54

Մուտք 6 Ն. Ֆ.

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ԱՐԾԻՒ ՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԱԼՀԱՄՊՐԱՅԻ ՄԷՋ

– (Մարսէյլ)

Կը մասնակցին՝

Claude Besset
Yvette Bazzy Coco Blanc
Roger Courcel
**Attractions**
**Buffet** **Cotillons**

Այս Շաբաթ իրիկուն ժամը 22էն մին- չեւ առաւօտ :

Մութ զգեստը պարտաւորիչ է :



## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի «Վարանդեան» կոմիտէին եւ մասնակ- ցութեամբ Հ. Յ. Դ. «Նոր Սերունդ»ին :

Նոյեմբեր 5ի Շաբաթ երեկոյեան ժամը 8·30ին Րիւ Տինուսւոի սրահին մէջ :

Կը նախագահէ Ընկ. Մ. ՄԻՐՁԷ
Կը խօսի Ընկ. Ս. ՍԻՄԼԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, կ՚ար- տասանեն Օրիորդներ Ս. Կարապետեան, Շ. Ղազարեան, Ս. Սիսլեան, Թ. Ճեր- մակեան, Մ. Իւրլիխ եւ Է. Մուրատեան :

Կ՚երգէ Օր. Ա. Կարապետեան եւ Փա- րիզէն յատկապէս հրաւիրուած Օր. Շաքէ Պէնկեան, ընկերակցութեամբ դաշնակա- հար Պ. Սիրանոսեանի :

Հայկական դեղջուկ պարեր Կրընոպլի Ֆ. Կ. Խաչի պարախումբին կողմէ, ղե- կավարութեամբ Տիկ. Ա. ՍԻՍԼԵԱՆԻ :

Մուտքը ազատ է :

×

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Անի կոմիտէի :

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Սէրքըլ Կաթոլիկ սրահին մէջ :

Կը նախագահէ Ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ :
Կը խօսի Ընկ. Յ. ՊԱՊԻԿԵԱՆ :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Պիտի արտասանեն Օր. Քինոսեան, Պ. Կ. Տօլմաճեան եւ ընկեր Յ. Մաթոսեան :

Կ՚երգեն Օր. Ա. Կարապետեան եւ ընկե- րուհի Վ. Բաստիկեան, եւ Փարիզէն Օր. Շաքէ Պէնկեան ընկերակցութեամբ դաշ- նակահար Պ. Սիրանոսեանի :

Կը ներկայացուի զաւեշտ մը Ռոմանի փոքրիկներու թատերախումբին կողմէ Ղեկավարութեամբ դերասան Ս. Քէփէ- նէկեանի :

Մուտքը ազատ է :

×

### ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Ընկերահամակրական խնջոյքով, դըպ- րոցի սրահը :

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 4ին :
Կը նախագահէ Ընկ. ՀՐԱՉ ՀԱՆՏԱԼԵԱՆ :
Կը խօսի՝ Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին :

Կը հրաւիրուին ընկերները եւ համա- կիրները իրենց ընտանիքներով :

Հասցէ .– 4 Րիւ տէ Թրուա Շանիքէ :

Ծախքերու մասնակցութիւն :

Օթօպիւս Փոն տը Սէվրէն 171 թիւ եւ իջնել Փիւի Սան Վէն :

×

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նոյեմբեր 12ին :

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմ- բեր 18, կէսօրէ ետք :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերն ու ենթակոմիտէները .—

Արամ խումբ .— Այս Կիրակի առաւօտ :

Ընկ. Կարօ խումբ .— Այս Կիրակի կէսօրէ վերջ :

Թաթուլ խումբ .— Այս Կիրակի կէսօրէ վերջ :

Ժողովներուն ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները :

Բոլոր ընկերներու ներկայութիւնը ան- հրաժեշտ է, շատ կարեւոր օրակարգ :

### ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Լիոնի Ազգ. վարչութեան հրաւէրով, Կիրակի, Նոյեմբեր վեցին, կէսօրէ վերջ ժամը 15·30ին, Ազգ. Տան մեծ սրահին մէջ տեղի պիտի ունենայ ներկայացուց- չական Բ. ժողով մը, որուն կրնան մաս- նակցիլ նաեւ Կրթ. եւ Մշակութ. կարե- ւոր հարցերով հետաքրքրուող բոլոր ծը- նողները եւ սրտցաւ ազգայիններ եւս համաձայն 1960 Հոկտ. 9, Կիրակի գու- մարուած ներկայացուցչական առաջին ժողովի փափաքին։ Ուստի ժողովը կը բացուի ժամը ճիշդ 15·30ին։ Կը յանձնա- րարուի ճշդապահ ըլլալ :

ԴԻՒԱՆ ԱԶԳ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

## 30-ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, 5 Մարտ, 1961, կէսօրէ վերջ ժամը 2·30ին, Սալ տը լա Շիմի :

28պիս, Րիւ Սէն Տոմինիք :

Կը խնդրուի նկատի առնել այս թուա- կանը :



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՍՈՂՈՄՈՆ ԹԵՀԼԻՐԵԱՆԻ

ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ ԺՈՂՈՎ

*Սողոմոն Թէհլիրեանի յիշատակի երեկոյին կարգադիր յանձնախումբը ժողովի հրաւիրուած է այս Երկուշաբթի իրիկուն ժամը 20ին, Քաֆէ Քոբայ :*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Փարիզի Հայ Աղքատախնամի վարչութեան որոշումով, այսուհետեւ, ամէն տարի Նոյեմբեր ամսոյն նախակէս որոշեալ Թուականի մը հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Հանգուցեալ Տուներու համօրէն ննջեցեալներու հոգւոց հանգստեան :*

*Առ ի գիտութիւն ուրեմն՝ Աղքատախնամի վարչութիւնը կը հաղորդէ ներկայիս, որ յառաջիկայ Նոյեմբեր 13ին, Կիրակի օր՝ Փարիզի եկեղեցւոյ մէջ՝ նախագահութեամբ Կաթ. Պատ. Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, բոլոր ննջեցեալներու հոգւոց :*

*Այս առթիւ կը հրաւիրուին ննջեցելոց ընտանիքներն ու պարագաները ինչպէս նաեւ բարեպաշտ հասարակութիւնը ներկայ գտնուիլ սոյն հանդիսութեան :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*ՄԱՐՍԷՅԼ.— Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյ կրօն. Ընկերակցութիւնը շնորհակալութեամբ ստացած է.— Հանգուցեալ Խաչատուր Սուքիասեանի մահուան տխուր առթիւ Պ. Ա. Միրոյեան, փոխան ծաղկեպսակի 20 Ն. Ֆ. եկեղեցւոյն, Երուանդ Այվազեանի մահուան տխուր առթիւ Տէր եւ Տիկին Մանուէլեան, Տէր եւ Տիկին Ֆրանկեան, Տէր եւ Տիկին Մ. Գ. Հացպանեան փոխան ծաղկեպսակի տասնական Ն. Ֆ. եկեղեցւոյն : Պ. Սուքիաս Քէօսէեան իր Թոռնիկի մկրտութեան առթիւ տասնական Ն. Ֆ. կը նուիրէ Պուլ. Օտտոյի Ս. Յակոբ Եկեղեցւոյ, Մուրատ Ուսումնասիրացին, Պուլ. Օտտոյի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին եւ Յառաջի տարածման : Վահան Էֆէնտիեանի մահուան տխուր առթիւ փոխան ծաղկեպսակի Տէր եւ Տիկին Մ. Գ. Հացպանեան տասը Ն. Ֆ. եկեղեցւոյ, Տէր եւ Տիկին Ս. Գաբրիէլեան քսան Ն. Ֆ. եկեղեցւոյ, Պ. Ա. Գուլիկեան տասը Ն. Ֆ. եկեղեցւոյ, եւ տասը Աղքատախնամին : Պ. Ս. Կուրճեան տասը Ն. Ֆ. եկեղեցւոյ, Տէր եւ Տիկին Ս. Խոլիկեան տասնական Ն. Ֆ. եկեղեցւոյ, Պուլ. Օտտոյի Ֆ. Կ. Խաչին եւ Փարիզի Մշակութային Տան :*

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի, ժամը 21ին, Քաֆէ Քաւէի վերնայարկը :*

ԳԻՆԵՁՕՆ

*Ի պատիւ Նշան Պէշիկթաշլեանի, Արեւելք մեկնումին առթիւ :*

*Կը հրաւիրուին համակիրները :*

# ԱԶԳԱՅԻՆ ԱՆՄԱՀ ՀԵՐՈՍ

# ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

# ՅԻՇԱՏԱԿԻՆ

ԵՐԵԿՈՅԹԸ ՏԵՂԻ Կ'ՈՒՆԵՆԱՅ ՇԱԲԱԹ, ՆՈՅԵՄԲԵՐ 12ԻՆ, ԺԱՄԸ 20·30ԻՆ

**MAISON DE LA CHIMIE,** 28 bis, Rue St-Dominique (Métro Invalides)

Բոլոր ազգային կազմակերպութիւնները հրաւիրուած են իրենց մասնակցութիւնը բերելու յիշատակի այս երեկոյթին :

*Յայտագրին մանրամասնութիւնները յաջորդով :* *ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*



ՎԵՐԱՄՈՒՏ

*ՄԱՐՍԷՅԼ.— Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյ կրօն. Ընկերակցութիւնը եւ Ֆ. Կ. Խաչի վարչութիւնը կը ծանուցանեն թէ տեղւոյս Ազգ. վարժարանը կը վերաբացուի այս Հինգշաբթի, եկեղեցւոյ սրահը, ուսուցչութեամբ Պ. Յակոբ Յարութիւնեանի (շրջանաւարտ Պէյրութի Փալանճեան ճեմարանէն) :*

*Կը խնդրուի Թաղիս ծնողքներէն, որ իրենց զաւակները արձանագրելու համար դիմեն ամէն Հինգշաբթի ժամը 2ին, դպրոցի սրահը : Արձանագրութիւնը կը կատարուի տեղւոյն վրայ :*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք :*

*Ա. Ջ. Դ.*

*Տոքթ. Բարսեղ Խրիմեան կը հաղորդէ իր յաճախորդներուն թէ իր դարմանատան նոր հասցէն է՝*

14, Place des Victoires, ASNIÈRES (Seine)

GRE. 24-45

*Տոքթ. Խրիմեան հիւանդներ կ'ընդունի Երեքշաբթի, Հինգշաբթի եւ Շաբաթ, ժամը 14էն 16, Երկուշաբթի եւ Ուրբաթ ժամը 18էն 20 եւ ժամադրութեամբ :*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

*ՀԱՅՑԷԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ*

*Ֆ. Կապ. Խաչի Կեդր. վարչութիւնը կը յայտարարէ թէ իր նոր հասցէն է :*

Croix Bleue des Arméniens de France

Comité Central

17, Rue Bleue, PARIS (9e)

Tél. TAI. 63-89

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Դպրոցասէրի տարեկան գեղարուեստական երեկոյթը՝ Մարտ 26ին :*

ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ

6ՐԴ ՊՏՈՅՏ ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ

ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՐԶՆԿԱՑԻԷՆ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՇԻՐԱԶ

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*Հինգշաբթի Նոյեմբեր 10, ժամը 21·15ին, Սալ Շոփէն :*

8, Rue Daru

*Տոմսերը՝ 2·50, 3·50 եւ 5 Ն. Ֆ. :*

*Ապահովել Բալուեան գրատունէն, 43* Րիւ Ռիշէ :

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Միքայելեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ (Նոյեմբեր 11), ժամը 21ին, իր նոր հաւաքատեղին :*

*Ներկայ կ'ըլլայ Փարիզի Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը :*

*ՕՐԱԿԱՐԳ.— Նախապատրաստական աշխատանքներ Հ. Յ. Դ. 31րդ Շրջ. ժողովին առթիւ, եւ այլ խնդիրներ :*

*Կը խնդրուի ընկերներէն ճշդապահ ըլլալ :*

*ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ընդհ. ժողովը, այս Շաբաթ երեկոյ, ժամը 8·30ին Աճարոնեան ակումբը : Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է : Կարեւոր օրակարգ :*

Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ

ԿԸ ՏՕՆՈՒԻ

*ՏԷՍԻՆԻ ՄԷՋ*

Նոյեմբեր 12ին :

*Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ :*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

Փրոֆ. Մանուշ Սեւակէ (Ֆիլատել - ֆիա) քսան տոլար։
Ընկ. Կայծակ Պօյաճեանէ (Մինիս). Ընկ. Սրապիոն Պօղոսեանի (Շթութ-կարտ) մահուան առթիւ յիսուն մարք։
Ընկեր Ս. Թորոսեանէ, նոյն առթիւ հարիւր Ն. Ֆ.։
Տիկին Արաքսի Վ. Փիրանեանէ եւ Տէր եւ Տիկին Կ. Անսրեկեանէ տասնական Ն. Ֆ. Ս. Պօղոսեանի մահուան առթիւ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Փարիզի Հայ Ազգատոհմամի վարչու-թեան որոշումով, այսուհետեւ, ամէն տարի Նոյեմբեր ամսոյն նախապէս որոշ-ուած Կիւրակէի մը հոգեհանգստեան պաշ-տօն պիտի կատարուի Հանգստեան Տու-ներու համօրէն ննջեցեալներու հոգւոյն հանգստեան։

Առ ի գիտութիւն ուրեմն՝ Ազգատոհ-մամի վարչութիւնը կը հաղորդէ ներ-կայիս, որ յառաջիկայ Նոյեմբեր 13ին, Կիրակի օր՝ Փարիզի եկեղեցւոյ մէջ՝ նախագահութեամբ Կաթ. Պատ. Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, բոլոր ննջեցեալներու հոգւոյն։

Այս առթիւ կը հրաւիրուին ննջեցելոց ընտանիքներն ու պարագաները ինչպէս նաեւ բարեպաշտ հասարակութիւնը ներ-կայ գտնուիլ սոյն հանդիսութեան։

×

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Թէճիրեան, զաւակները եւ ընտանեկան պարագաները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի, յետ պատարագի, ժամը 10·30ին Պուլվ. Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցիին մէջ, ի-րենց ողբացեալ ամուսնոյն, հօր եւ եղ-բօր՝

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹԷՃԻՐԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ։
Կը հրաւիրուի ողբացեալի յիշատակը յարգողները։

## Կ'ՈՒԶՈՒԻ

Հօկող մը Սամուէլ Մուրատեան վար-ժարանին համար։
Դիմել տեսչութեան՝
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)



# ԱԶԳԱՅԻՆ ԱՆՄԱՀ ՀԵՐՈՍ
# ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ
## ՅԻՇԱՏԱԿԻՆ

ԵՐԵԿՈՅԹԸ ՏԵՂԻ Կ'ՈՒՆԵՆԱՅ ՇԱԲԱԹ, ՆՈՅԵՄԲԵՐ 12ԻՆ, ԺԱՄԸ 20·30ԻՆ

**MAISON DE LA CHIMIE, 28 bis, Rue St-Dominique (Métro Invalides)**

Բոլոր ազգային կազմակերպութիւնները հրաւիրուած են իրենց մասնակցութիւնը բերելու յիշատակի այս երեկոյթին։

Յայտագրին մանրամասնութիւնները յաջորդով։ ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

## ՎԵՐԱԲԱՑՈՒՄ
### ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔԻՆ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը ու-րախութեամբ կը ծանուցանէ թէ վերա-բացած է Հինգշաբթի օրուան իր հայերէ-նի դասընթացքը, որ երկար տարիներ տեղի կ'ունենար Սօտիէթէ Սավանթի մէջ, փորձառու ուսուցչուհիներով, եւ որ ընդհատուած էր յարմար սրահի մը չգո-յութեան պատճառով։

Ներկայիս հայերէնի դասաւանդու-թիւնները տեղի կ'ունենան 215 Պուլվ. Սէն Ժերմէն, Փարիզ (7), մէթրօ Րիւ տիւ Պաք, շատ գեղեցիկ դասարանի մը մէջ, օժտուած գպրոցի յատուկ ամէն կարելիութիւններով եւ պարտէզով։

Ուսուցչուհին է Տիկին Ա. Զիթունի, որ ամէն Հինգշաբթի կէսօրէ ետք ժամը 2էն մինչեւ 5 կը դասաւանդէ եւ նոյնպէս կը կատարէ նորեկ աշակերտներու ար-ձանագրութիւնները։

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը այս գոհողութիւնը յանձն առած է սիրայօ-ժար, հայ դպրոցէ զրկուած թաղամասի մը երեխաներուն հայեցի դաստիարակու-թիւն տալու մտահողութեամբ։

Յարգելի ծնողքներուն կը մնայ գնա-հատել այս ձեռնարկը, առաջնորդելով այս հայերէնի դասընթացքին իրենց զա-ւակները, զանոնք օտարացումէ կամ ու-ծացումէ զերծ պահելու համար։

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

## ՎԵՐԱՄՈՒՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Պուլվար Օտտոյի Ս. Յա-կոբ եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութիւնը եւ Ֆ. Կ. Խաչի վարչութիւնը կը ծանու-ցանեն թէ տեղւոյս Ազգ. վարժարանը կը վերաբացուի այս Հինգշաբթի, եկեղեցւոյ սրահը, ուսուցչութեամբ Պ. Յակոբ Յա-րութիւնեանի (շրջանաւարտ Պէյրութի Փալանճեան ճեմարանէն)։

Կը խնդրուի թաղիս ծնողքներէն, որ իրենց զաւակները արձանագրելու հա-մար դիմեն ամէն Հինգշաբթի ժամը 2ին, դպրոցի սրահը։ Արձանագրութիւնը կը կատարուի տեղւոյն վրայ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմ-բեր 18, կէսօրէ ետք։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի, ժամը 21ին, Քաֆէ Քառէի վերնայարկը։

ԳԻՆԵՋՕՆ

Ի պատիւ Նշան Պէշիկթաշլեանի, Ա-բեւեղք մեկնումին առթիւ։
Կը հրաւիրուին համակիրները։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Դպրոցասէրի տարեկան գեղարուեստա-կան ցերեկոյթը՝ Մարտ 26ին։

ՍԵԲԱՍՏԻՈՅ ՆԱՀԱԳԱՅԻՆ
ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ

Շարժանկարի ներկայացում

### Ի՞ՆՉ Է ՊԱՏՄՈՒՄ ԳԵՏԸ
եւ ՓԱՍՏԱՆԿԱՐ ՄԸ

Ի նպաստ իր սաներուն
Երեքշաբթի, Նոյեմբեր 15ին, ժամը 21-ին, Սինեմա Ալհամպրա, Ավընիւ Ժան Ժորէս (Իսի)։

Մուտք՝ 3 Ն. Ֆ.

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Կիրակի, Պ. Ֆիլիփի սրճարանը։ Ներկայ կ'ըլլայ Շրջ. վար-չութեան ներկայացուցիչը։ Կը խնդրուի բոլոր ընկերուհիներէն անխտիր ներկայ գտնուիլ։

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինաս-եան ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրա-ւիրէն բոլոր ընկերները այս Ուրբաթ (Նոյեմբեր 11), ժամը 21ին, իր նոր հա-ւաքատեղին։
Ներկայ կ'ըլլայ Փարիզի Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը։

ՕՐԱԿԱՐԳ.— Նախապատրաստական աշխատանքներ Հ. Յ. Դ. 31րդ Շրջ. ժո-ղովին առթիւ, եւ այլ խնդիրներ։
Կը խնդրուի ընկերներէն ճշդապահ ըլ-լալ։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ընդհ. ժողովը, այս Շաբաթ երեկոյ, ժամը 8·30ին Ահարոնեան ակումբը։ Բո-լոր ընկերներուն ներկայութիւնը պար-տաւորիչ է։ Կարեւոր օրակարգ։

ՓԱՐԻԶ.— Փոթորիկ խումբի ժողովը, այս Հինգշաբթի երեկոյ, ժամը 8·30ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օ-րակարգ։

### Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ
ԿԸ ՏՕՆՈՒԻ
ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նոյեմբեր 12ին։
Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ։





## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազ-դերու համար են։
Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։
Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՏԷՄԻՆԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Տէմինի կոմիտէի այս Շաբաթ երեկոյ ժամը 8·30-ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:*

*Կը նախագահէ՝ Ընկ. ՋԷՔԵԱՆ :*

*Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ :*

*Պիտի ներկայացուի տարագրութենէն առնուած ողբերգութիւն մը՝*

*« ՑԵՂԻՍ ՎՐԷԺԸ »*

*Ղեկավարութեամբ՝ դերասան ԹՐԱԳՕՇԻ եւ մասնակցութեամբ Տէմինի կարող ուժերու :*

*Կը հրաւիրուի Տէմինահայութիւնը անխտիր :*

×

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Նոյեմբեր 19ին :

*Կը խօսի՝ Ընկ. ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ*

---

### *ԱՅՑ ՓԵՌ–ԼԱՇԷԶԻ ԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆԸ*

*Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբը այց մը կազմակերպած է Փեռ – Լաշէզի գերեզմանատունը, այս Կիրակի ժամը 15ին .— Ընկերներ՝* Ա. Ահարոնեանի, Ա. Խատիսեանի, Ռուբէնի, Շ. Միսաքեանի, Զօր. Անդրանիկի, *ինչպէս նաեւ Ազգ. գործիչներ* Գ. Օտեանի եւ Տիգրան Բէկզատեանի *շիրիմներուն :*

*ՀԱՒԱՔԱՎԱՅՐ* կամպեթայի մուտքին *առջեւ :*

---

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ՀԱՒԱՔՈՅԹ

### *ՏԷՄԻՆԻ ՄԷՋ*

*Այս Կիրակի ժամը 15·30ին Տէմինի Հ. Յ. Դ. Տան մէջ ընկերական հաւաքոյթ տեղի պիտի ունենայ :*

*Կը հրաւիրուին Կեդր. Ֆրանսայի Նոր Սերնդականները եւ երիտասարդները :*

*Ներկայ կը գտնուի Հ. Յ. Դ. Ն. Մ-ի կեդրոնական վարչութեան կողմէ ընկեր ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ :*

---

ՍԵԲԱՍՏԻՈՅ ՆԱՀԱԳԱՅԻՆ ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ

Շարժանկարի ներկայացում

## Ի՞ՆՉ Է ՊԱՏՄՈՒՄ ԳԵՏԸ

### եւ ՓԱՍՏԱՆԿԱՐ ՄԸ

Ի նպաստ իր սաներուն

*Երեքշաբթի, Նոյեմբեր 15ին, ժամը 21-ին, Սինեմա Ալհամպրա, Ավընիւ Ժան Ժորէս (Իսի) :*

Մուտք՝ 3 Ն. Ֆ.

12 տարեկանէն վար պզտիկներու մուտքը ձրի է :

---

Imprimerie Spéciale du journal « Haratch »

# ԱԶԳԱՅԻՆ ԱՆՄԱՀ ՀԵՐՈՍ

# ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

## ՅԻՇԱՏԱԿԻՆ

ԵՐԵԿՈՅԹԸ ՏԵՂԻ Կ'ՈՒՆԵՆԱՅ ՇԱԲԱԹ, ՆՈՅԵՄԲԵՐ 12ԻՆ, ԺԱՄԸ 20·30ԻՆ

**MAISON DE LA CHIMIE,** 28 bis, Rue St-Dominique (Métro Invalides)

*ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝*

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

*ԿԸ ԽՕՍԻՆ՝*

ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ

եւ

Կ. ՄԵՀԵԱՆ

Իրենց մասնակցութիւնը կը բերեն *ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ*

ՏԻԿԻՆ ԱՆԱՀԻՏ ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ, Օր. ԳԱԲՌԻԵԼԵԱՆ, Պ. ԱՐՏԱՇԷՍ ԳՄԲԷԹԵԱՆ

եւ

ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆ

Բոլոր ազգային կազմակերպութիւնները հրաւիրուած են իրենց մասնակցութիւնը բերելու յիշատակի այս երեկոյթին :

*ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*

---

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Պ. Գրիգոր Քահվէճեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց կնոջ եւ մօր՝*

*ՋԱՊԷԼ ՔԱՀՎԷՃԵԱՆԻ*

*մահուան քառասունքին առթիւ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, այս Կիրակի առաւօտ, յետ պատարագի :*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :*

### *ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ*

*Փոն տը Շէրիի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութիւնը եւ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանեն թէ այս Ուրբաթ (11 Նոյեմբեր) Զինադադարի տօնին առթիւ Տէմինի Տէր Վարազ քհնյ. Աւագեանը Ս. պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարէ 1914ի եւ 1939ի Հայ նահատակներու հոգւոյն համար, տեղւոյս Ս. Գր. Լուսաւորիչ մատրան մէջ, դպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի :*

### *ՔԱՌԱՍՈՒՆՔ*

*Այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ քառասունքի պատարագ պիտի մատուցուի :*

*Կը պատարագէ եւ կը քարոզէ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆ :*

---

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ (Նոյեմբեր 11), ժամը 21ին, իր նոր հաւաքատեղին :*

*Ներկայ կ'ըլլայ Փարիզի Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը :*

*ՕՐԱԿԱՐԳ.— Նախապատրաստական աշխատանքներ Հ. Յ. Դ. 31րդ Շրջ. ժողովին առթիւ, եւ այլ խնդիրներ :*

*Կը խնդրուի ընկերներէն ճշդապահ ըլլալ :*

*ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ընդհ. ժողովը, այս Շաբաթ երեկոյ, ժամը 8·30ին Ահարոնեան ակումբը : Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է : Կարեւոր օրակարգ :*

Քափէ Ռեժանի *առաջին յարկը :*

*ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէները .—*

Հայաստան, *այս Շաբաթ իրիկուն ժամը* 21ին :

Ջաւարեան, *այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին :*

Համազասպ, *այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին :*

*Ժողովներուն ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները :*

---

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ վարչութեան դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները, ի նպաստ իր կրթական ձեռնարկներուն :*

*Երկու հարիւր Ն. Ֆ. Պ. Հայկ Գէրքճեանէ (Վերտէօն) իր ողբացեալ կնոջ մահուան տարելիցին առիթով : Տէր եւ Տիկին Յարութիւն Ժամկոչեան յիսուն Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Հրանտ Թորոսեան երեսուն Ն. Ֆ. ողբացեալ Տիկին Արտէմ Խանզատեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի : Պ. Արամ Զիթունի երեսուն Ն. Ֆ. իր սիրեցեալ եղբօր Տիգրան Զիթունիի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի :*

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱՊ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի ժողովը այս Կիր. ժամը20·30ին Պ. Ֆիլիփի սրճարանը : Ներկայ կ'ըլլայ Շրջ. վարչութեան ներկայացուցիչը : Կը խնդրուի բոլոր ընկերուհիներէն անխտիր ներկայ գտնուիլ : Օրակարգ.— Վարչութեան ընտրութիւն եւ հաշուետուութիւն :*

*Ֆ. Կ. ԽԱՉԻ Իթալիի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Երկուշաբթի կէսօրէն վերջ ժամը երեքին, Ժանթիյիի դպրոցի սրահին մէջ : Կարեւոր օրակարգ :*

*Ներկայ կ'ըլլայ Շրջ. վարչութեան ներկայացուցիչը :*

*Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհանուր ժողովը այս Շաբաթ կէսօրէ ետք ժամը չորսին ընկերուհի Տիկին Ա. Գազազեանի բնակարանը,* 6 Րիւ Սէն Սիւլփիս, Փարիզ (6), մէթրօ Օտէօն :

*Օրակարգ.— Ա) Հաշուեքննիչի զեկուցումը : Բ) Նոր վարչութեան ընտրութիւն : Գ) Ընթացիկ կարեւոր հարցեր :*

*Կը խնդրուի բոլորին ներկայութիւնը :*

դելու վճռակամութիւնն ունինք ։ Կը կրկնեմ, Թուրք ազգին բախտը կապուած է միայն բարեչրջութեան մը, որ պիտի կատարուի ժողովրդավարական կարգերու մէջ եւ այդ կարգերուն առաքինի մթնոլորտին մէջ։ Մենք իրաւունք եւ իրաւասութիւն չունինք այս ընթացքը կասեցնելու, ոչ ալ այլասերելու այդ աղնիւ, մաքուր մտածումները ։

**ՈՐՈՇՈՒՄԸ ԳՈՐԾԱԴՐՈՒԱԾ Է**

« Ահա բոլոր այս մտածումներուն եւ նկատումներուն շրջանակին մէջ՝ մեր ճամբան լուսաւորելու եւ պատշաճ որոշումները տալու դիրքին մէջ կը գտնըւինք։ Այդպէս ալ ըրինք, որոշումը գործադրեցինք ։

«Այս որոշումին հարկեցուցիչ պատճառներուն մասին ըսելիքներս այսքան են» ։

**ՀԱՐՑՈՒՄՆԵՐ**

Ցեռոյ Զօր․ Կիւրսէլ պատասխանեց զանազան հարցումներու, զորս ուղղեցին լրագրողները ։

Հարցում․— Իտէալի միասնութեան օրինագիծը ի՞նչ պիտի ըլլայ ։

Պատ․— Այդպիսի բան չկայ։ Ես ալ հետեւեալ առաջարկը ներկայացնեմ ձեզի ․ — Թուրք հայրենիքը հարիւր մեծը վեր բարձրացուցէք, ի՞նչ կ'ըլլայ։ Մենք վճռած ենք ժողովրդավար կարգեր հաստատել երկրին մէջ։ Մեր կոմիտէն պիտի չհանէ որեւէ օրէնք որ ստուեր աձէ ասոր վրայ ։

**ՓՐՈՖԷՍՕՐՆԵՐՈՒՆ ԴԻՐՔԸ**

— Ի՞նչ պիտի ըլլայ փրոֆէսօրներուն դիրքը։

— Փրոֆէսօրներու կազմած նոր խորհուրդին գաղափարը պիտի հարցնենք։ Ազատ ենք մեր որոշումը տալու՝ մեր ըստացած պատասխաններուն համեմատ ։ Մենք անիրաւութիւն սիրող մարդ չենք ։

— Դահլիճին մէջ փոփոխութիւն տեղի պիտի ունենա՞յ ։

— Այդ տեսակ բան չկայ ։

— Ի՞նչ է պաշտօնանկ անդամներուն դիրքը ։

— Ամէն հայրենակիցի դիրքին մէջ կը գտնուին։

— Ընդդիմացող գտնուեցա՞ւ ։

— Վճռած ենք բացարձակապէս կոտրել ընդդիմութիւնները։ Բայց այն նամակները, զորս ստացած եմ ընկերներէ եւ պաշտօնանկներէ, կը յայտնեն թէ որոշումը երկրին նպաստաւոր է ։

**ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ**

**ՓՈԽՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ**

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Ծնողաց Միութեան կազմակերպած տարեկան Տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ՝

Կիրակի, 11 Դեկտեմբեր

Մանրամասնութիւնները յաջորդով ։

## ՆՈՐ ՏԱՐԻԷՆ ԱՌԱՋ

Մեր բաժանորդներէն կը խնդրենք որ կանոնաւոր եւ կանխիկ վճարեն իրենց բաժնեգինները, առանց սպասելու մասնաւոր դիմումի ։

Ընկերային եւ այլ տուրքերու վերջին յաւելումները պատճառ կը դառնան որ 1961 Յունուար 1էն, բաժանորդագրութեան եւ հատավաճառութեան պայմանները փոխուին։

Մինչեւ Դեկտեմբեր 31, 1960 վճարում ընողները կրնան բացառաբար օգտուիլ ներկայ պայմաններէն ։

Շնորհակալութիւն մեր այն բոլոր բաժանորդներուն որ իրենց պարտաճանաչութեամբ կը դիւրացնեն վարչութեան գործը ։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Զորեքշաբթի, ժամը 21ին՝ Քաֆէ Քամէի վերնայարկը ։

Պիտի խօսի Պ․ ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ ։

Նիւթն է՝ «Ի՞նչպէս կ'աշխատիմ»։ Քանի մը արտասանական կտորներ ալ իբրեւ օրինակ բերելով ։

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Երկուշաբթի, Նոյեմբեր 21ին տօն Ընծայման, Տիրամօր ի Տաճարն ։

Կէսօրէ վերջ ժամը 16·30ին ձայնաւոր պատարագ Անտիլիի Հայ ծերանոցին մէջ։

Մեկնում Կառ. տիւ. Նորէն կէսօրէ վերջ ժամը 14ին։

## ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Թօքատի Հայր․ Միութեան տարեկան խնջոյքը 27 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին, Խրիմեան սրահը, (Իսի լէ Մուլինօ, 2 Րիւ տը լա Տէֆանս) ։

Կը նախագահէ Պ․ ՅԱԿՈԲԵԱՆ ։

Կը խօսի Պ․ Յ․ ՀԻՍԱՅԵԱՆ ։

Գեղարուեստական ճոխ բաժին ։

Կը մասնակցին․— Տիկիններ՝ Սրապեան, Գալայճեան, Օրիորդներ՝ Նախապետեան քոյրեր, Սմսարեան Թարոն ։

Պ․ Գարակէօզեան, Ս․ Յակոբեան ։

Մուտքը ազատ է ։

Ոչ աճուրդ, ոչ հանգանակութիւն ։

ԳՐԱԿԱՆ Բ․ ՀԱՄԵՐԳ

## ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆԻ

Գրական վերջին համերգը ուրիշ երեկոյթի մը զուգադիպած ըլլալով, կը կրկնուի այս Հինգշաբթի, ժամը 21ին, Սալ տը ժէոկրաֆի, 184 Պուլվ․ Սէն Ժերմէն։

Տոմսերու համար դիմել՝ Հրանտ Բալուեան գրատունը եւ հանդէսին օրը տեղւոյն վրայ ։

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՇԱՐՔ

Կազմակերպուած Հ․ Յ․ Դ․ Նոր Սերունդի Կեդր․ Վարչութեան կողմէ

Վերամուտի Բ․ դասախօսութիւն

Դասախօս՝ Ընկեր ՅՈՎՀ․ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

Նիւթ՝ Հայ Դատը եւ երիտասարդութիւնը։

Այս Ուրբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ, 17 Ռիւ Պլէօ

Այս դասախօսութիւնները վերապահուած են Հ․ Յ․ Դ․ Նոր Սերնդականներուն։ Արձանագրութիւնը պարտաւորիչ է ։

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՊԵԼՖՈՐԷՆ Նոյեմբեր 15ին քառասուն Ն․ Ֆ․ ղրկող բաժանորդէն կը խնդրենք իր անունը հաղորդել վարչութեան, կտրոնին վրայ «Յառաջ»ի անունն ու հասցէն գրած է փոխանակ իր անունին եւ հասցէին։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Համաչարսանճագի Մարսէյլի եւ Լիոնի մասնաճիւղերը իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն Հալաճեան ընտանիքին եւ պարագաներուն, Պ․ Աւագ Հալաճեանի մահուան առթիւ (Զարսանճագի Նոր գիւղացի) եւ փոխան ծաղկեպսակի 30 Ն․ Ֆ․ կը նուիրեն Աղքատախնամի ։ (Ստանալ «Յառաջ»էն) ։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ․— Հ․ Յ․ Դ․ «Քրիստափոր» խումբի ընդհ․ ժողովը այս Երեքշաբթի, ժամը 20·30ին, Քաֆէ Րէժանի մէջ ։ Մէթրօ Քատէ ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է ։

ՊԱՆԵԽՕ – ՔԱՇԱՆ․— Հ․ Յ․ Դ․ «Արծիւ» ենթակոմիտէին ընդհ․ ժողովը այս Երեքշաբթի, ժամը 20·30ին, ծանօթ հաւաքատեղին։ Օրակարգ՝ նախորդ ժողովի շարունակութիւն ։

ՎԻԷՆ․— Հ․ Յ․ Դ․ Անի կոմիտէն, ընդհանուր ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Շաբաթ երեկոյ ժամը 20·30ին, Օհանջանեան սրահին մէջ։ Շատ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է ։

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն․ Ֆր․ | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն․ Ֆր․ | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն․ Ֆր․ | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն․ Ֆր․ | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն․ Ֆր․ | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն․ Ֆր․ | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն․ Ֆր․ | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն․ Ֆր․ | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն․ Ֆր․ | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Այրի Տիկին Մաննիկ Մինասեան իր Թոռնիկին անդրանիկ զաւկին ելիզապէթի ծննդեան առթիւ տասը Ն. Ֆ. կը նուիրէ Ս. Թէհլիրեան սրահին։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՆՈՐ ՏԱՐԻԷՆ ԱՌԱՋ

Մեր բաժանորդներէն կը խնդրենք որ կանոնաւոր եւ կանխիկ վճարեն իրենց բաժնեգինները, առանց սպասելու մասնաւոր դիմումի։

Ընկերային եւ այլ տուրքերու վերջին յաւելումները պատճառ կը դառնան որ 1961 Յունուար 1էն, բաժանորդագրութեան եւ հատավաճառութեան պայման–ները փոխուին։

Մինչեւ Դեկտեմբեր 31, 1960 վճարում ընողները կրնան բացառաբար օգտուիլ ներկայ պայմաններէն։

Շնորհակալութիւն մեր այն բոլոր բաժանորդներուն որ իրենց պարտաճանաչութեամբ կը դիւրացնեն վարչութեան գործը։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղը՝ շնորհակալութեամբ ստացած է Պ. Յով–հաննէս Քօճապըյըկեանի նուիրած մեծաքանակ բրդեղէններն ու հագուստեղէն–ները։

## ՀԱՅ ՆԱԽԿԻՆ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

Ֆրանսական Բանակի Հայ Նախկին Ռազմիկներու Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այս Կիրակի, Նոյեմբեր 27, ժամը ճիշդ 14ին, իր կեդրոնատեղին՝
32, Rue de Trévise, PARIS (9e)

## Հ. Յ. Դ. ԵՕԹԱՆԱՍՆԱՄԵԱԿԸ ԼՈՆՏՈՆԻ ՄԷՋ

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ
կը խօսի՝ Ընկ. ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կապ. Խաչի կողմէ՝
ՀԻՆԳՇԱԲԹԻ, ԴԵԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ

## ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԵԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

Հերթական հաւաքոյթը, Շաբաթ, Նոյեմբեր 26, ժամը 21էն սկսեալ,

**LE NARCYS**

2, Rue Quinault, Métro Cambronne
ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

**Attractions Bar**

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի Ս. պատարագ կը մատուցանէ Կաթող. Պատուիրակ եւ Փարիզի Առաջնորդ Գերաշնորհ Տ Սերովբէ Եպիսկ. Մանուկեան, իր քարոզը մասնաւորապէս յատկացնելով երջանկայիշատակ Տ. Եղիշէ Արք. Դուրեանի հարիւրամեայ եւ Թուրքիոյ Հայերու սրբի պատրիարք Ամեն. Տ. Գարեգին Արք. Խաչատուրեանի ութսունամեայ Յոբելեաններուն, անդրադառնալով անոնց եկեղեցական եւ գրական գործունէութեան ու վաստակին։ Պատարագիչ սրբազանը պիտի կատարէ նաեւ Զարխափանի նորակերտ մարմարեայ խորանին օծումը եւ կիսասարգաւագներու ձեռնադրութիւն։

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

## ՓՈԽՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տնողաց Միութեան կազմակերպած տարեկան Տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ՝
Կիրակի, 11 Դեկտեմբեր
Մանրամասնութիւնները յաջորդով։

### ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Թոքատի Հայր. Միութեան տարեկան խնջոյքը 27 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին, Խրիմեան սրահը, (Իսի լէ Մուլինօ, 2 Րիւ տը լա Տէֆանս)։
Կը նախագահէ Պ. ՅԱԿՈԲԵԱՆ։
Կը խօսի Պ. Յ. ՀԻՍԱՅԵԱՆ։
Գեղարուեստական ճոխ բաժին։
Կը մասնակցին.— Տիկիններ՝ Սրապեան, Գալայճեան, Օրիորդներ՝ Նախապետեան քոյրեր, Սմսարեան Թարոն։
Պ. Գարակէօզեան, Ս. Յակոբեան։
Մուտքը ազատ է։
Ոչ ածուրդ, ոչ հանգանակութիւն։

## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆ

Մարսէյլէն ուղղակի Օտեսա, կամ աշխարհի որեւէ կողմէ նաւով, օդանաւով, երկաթուղիով, որեւէ ընկերութեամբ եւ նոյն գիներով։
Վճարումը՝ հոս կամ արտասահման։ Կ'ապահովենք վիզայի գործողութիւնները ձրի, կ'ապահովենք նաեւ տեղերը ձրի։
Դիմել՝

ԺԱՆ-ԵՂԻՇԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆԻ
որ 35 տարուան փորձառութիւն ունի։

**AMERICAN LLOYD**

48, RUE DE LA RÉPUBLIQUE
MARSEILLE
Tél. : 20-47-22
Ամէն դիւրութեան համար, ամէն տեղէ դիմել Մարսէյլի հասցէին։

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն սախպողաբար խմբական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէի եւ խումբերու ընկերները։

ԱՄԵՐԻԿԱՑԷՆ ՆՈՐ ԺԱՄԱՆԱԾ՝

ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ ՆԵՐԿԱՅ ՊԻՏԻ ԸԼԼԱՅ ԱՅԴ ԺՈՂՈՎՆԵՐՈՒՆ։

ԱՐՂՈՒԹԵԱՆ, այս Շաբաթ, ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։

ՌՈՍՏՈՄ եւ ՌՈՒՖԻ, Երեքշաբթի (29 Նոյեմբեր) ժամը 8.30ին Բէժան սրճարանը։

ԱՐԱՄ։ Հինգշաբթի 1 Դեկտ. ժամը 8.30ին, Քոլոմպ, կայարանին մօտիկ սրճարանը։

ԱՂԲԻՒՐ ՍԵՐՈԲ, Ուրբաթ 2 Դեկտեմբեր, ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։

ՎԱՐԴԱՆ, Կիրակի 4 Դեկտեմբեր կէսօրէ վերջ ժամը 3ին, սովորական հաւաքատեղին։

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէն, ընդհանուր ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Շաբաթ երեկոյ ժամը 20.30ին, Օհանջանեան սրահին մէջ։ Շատ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԿՐԸՆՈՊԼ.— Հ. Յ. Դ. «Եօթնեղբայրեան»ի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը 15ին, Ահարոնեան ակումբին մէջ։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Խիստ կարեւոր օրակարգ։ Ներկայ կ'ըլլան Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէին ներկայացուցիչները։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մուրատ – Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան տարեկան պարահանդէսը, Յունուար 29ին։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

ղիս հարցաքննելու եկաւ։ Իրապէս փափկանկատ, բարեկիրթ անձ մըն է։ Հարցաքննութիւնը լրացաւ, սխկարէթ ծխեցինք։ Ինծի ըսաւ թէ վարչապետարանի դրամարկղէն փոքր նկարներ գտնուած են։ «Այո, ըսի, պատմեմ խնդիրը»։

## ՔՈՐԱԼԹԱՆԻ ՆԿԱՐՆԵՐԸ

Օր մը Րէջիք Քորալթան եկաւ մօտս։ Նուէր մը բերեր էին, ցոյց տուաւ ինծի։ Յետոյ ձգեց ու գնաց։ Չկրցայ նետել, չկրցայ ծախել, այնտեղ դրի։ Ասոնք վրան-բաց նկարներ չեն, գեղարուեստական նկարներ են։ Կը կարծեմ թէ կը յիշէ ընդհ. դատախազը։ Շատ պատուաւոր դատաւոր մըն է ինք։ Ինծի իրաւունք տըւաւ ըսելով. «Ձեր տարապայման աշխատութեան ընթացքին անոնց նայելով կը զբօսնուք»։

Մենտերէսի այս խօսքը բուռն ծիծաղներով դիմաւորուեցաւ։ Ընդհ. դատախազը քիչ մը ջղայնացաւ։ Նախագահ Պաշօլ խիկոյն հարցում մը ուղղեց.

— Քորալթան ետ չուզե՞ց նկարները։

Մենտերէս պատասխանեց.

— Շատ անկարեւոր բաներ էին։ Ձգեց գնաց։ Այդ չէ կարեւորը։ Քորալթան ձըգեց գնաց։ Այդ նկարները հանդստանալու առիթ ընծայեր են։ Լաւ։ Ցոյժ բարեկիրթ փափկանկատ պէյէֆէնտին ալ նայեցաւ այդ նկարներուն։

Մենտերէս այս խօսքը ըսելէ ետք ընդհանուր դատախազին դարձաւ եւ անակնկալօրէն հարցուց.

— Վրան-բա՞ց էր, պէյէֆէնտի, կը հարցնեմ ձեզի։

Մենտերէս յետոյ շարունակելով մեղադրեց ընդհ. դատախազը եւ ըսաւ. «Իրօք դատավարութեան ծառայած կ'ըլլար՝ եթէ փաստ հաւաքելով գար»։

Նախագահը. «Ի՞նչ է ձեր վերջին խօսքը» հարցուց։ — «Անպարտութիւնս կ'ուզեմ» ըսաւ Մենտերէս։

## ԸՆԴՀ. ԴԱՏԱԽԱԶԻՆ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Ընդհ. դատախազը խիկոյն խօսք առնելով պատասխանեց Մենտերէսի։

— Ձայն հարցաքննեցի, ճիշդ է։ Յետոյ արկղէն ելած նկարներու տուփին մասին խօսեցայ։ Անհրաժեշտ էր առիկա իրականութիւնը հասկնալու համար։ Տեսայ տուփը։ Մէջինները տեսայ։ Ինչո՞ւ «քիլոթ»ին մասին չի խօսիր։ Ինչո՞ւ Սուզան Սէօզէնի խօսքը չըներ։ Շատ բաներ ունիմ ըսելիք»։

Յետոյ վերջին խօսքը տրուեցաւ Մենտերէսի որ ըսաւ. «Բանավէճի բռնուելու չեմ։ Դարձեալ նիւթէն շեղեցաւ։ Տեսէք կը խնդան» ու ցոյց տուաւ թեթեւօրէն ժպտող դատախազը։

Յետոյ այսպէս շեղաւ ըսելով, յայտնեց թէ ընդհ. դատախազը հարցաքննութենէն ետքը ինչպէս դիտած է նկարները։

Բարձր. ատեանը վճիռ արձակելու համար դատը Երկուշաբթի օրուան յետաձգեց։

ՎՐԻՊԱԿ, «Հայկական մանրանկարչութիւն» յօդուածին (Յառաջ, Նոյեմբեր 25, Ա. էջ) Ա. սիւնակին ութերորդ պարբերութիւնն է.— «Անցեալին, գնահատելի առաջնութեամբ մը, Հայպետհրատը լոյս ընծայած էր, բաւական յաջող նման հատոր մը՝ բացատրականները ռուսերէն եւ հայերէն լեզուով»։ Տպագրական վրիպումի մը հետեւանքով չէր շարուած «եւ հայերէն»ը ինչ որ մեր ընթերցողները ճշդած են անշուշտ ինքնաբերաբար։

## ՆՈՐ ՏԱՐԻԷՆ ԱՌԱՋ

Մեր բաժանորդներէն կը խնդրենք որ կանոնաւոր եւ կանխիկ վճարեն իրենց բաժնեգինները, առանց սպասելու մասնաւոր դիմումի։

Ընկերային եւ այլ տուրքերու վերջին յաւելումները պատճառ կը դառնան որ 1961 Յունուար 1էն, բաժանորդագրութեան եւ հատավաճառութեան պայմանները փոխուին։

Մինչեւ Դեկտեմբեր 31, 1960 վճարում ընողները կրնան բացառաբար օգտուիլ ներկայ պայմաններէն։

Շնորհակալութիւն մեր այն բոլոր բաժանորդներուն որ իրենց պարտաճանաչութեամբ կը դիւրացնեն վարչութեան գործը։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տիկին Մ. Օպողեանէ յիսուն Ն. Ֆ. իր աղջկան Քոլէթի պաքալօրէայի յաջողելուն ուրախ առթիւ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կապ. Խաչի կողմէ՝

ՀԻՆԳՇԱԲԹԻ, ԴԵԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ

ՄԱՐՍԷՅԼԻ

### Հ.Մ.Ը.Մ.Ի ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Դեկտեմբեր 10ին, Շաբաթ երեկոյ, ժամը 21էն մինչեւ լոյս։

Սալոն տը լ'Ալամպրայի մէջ

Մանրամասնութիւնները՝ առանձին։

ՀԱՅԵՐԷՆԻ
ԵՐԵԿՈՅԵԱՆ ՁՐԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ
ՉԱՓԱՀԱՍՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ

«Ֆիլօթէքնիք» ընկերակցութեան կողմէ կազմակերպուած։

LYCÉE CONDORCET
8, Rue du Havre, Paris (9e)
Ամէն Ուրբաթ երեկոյ, ժամը 19ին

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

### ՓՈԽՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Ծնողաց Միութեան կազմակերպած տարեկան Տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ՝

Կիրակի, 11 Դեկտեմբեր

Մանրամասնութիւնները յաջորդով։

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի, ժամը 21ին, Քաֆէ Քատէի վերնայարկը։

Կը խօսի Պ. ԳՐԻԳՈՐ ՊԱՀՐԻ։

Նիւթ ունենալով «Քրիստոնեայ եկեղեցիներու միութեան խնդիրը»։

### ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Նախկին Հայ Արիներու եւ Արենուշներու։

Այս Շաբաթ, ժամը 21էն մինչեւ լոյս։ ՔԼԻՒՊի շքեղ սրահին մէջ,

51, Rue Grignan

Մասնակցութեամբ Մարսէյլի լաւագոյն նուագախումբին, ղեկավարութեամբ

EDDY TOURNEL ի

Հայկական տոհմիկ պարեր, հայ արենուշներու կողմէ։

Ճոխ պիւֆէ, մատչելի գիներով եւ թօ-թիյօն։

Օրուան թագուհի պիտի ընտրուի ամենաշնորհալի եւ վայելուչ օրիորդը, քուէարկութեամբ։

Զանազան հաճելի անակնկալներ։

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՅՈՎՍԷՓ ԷՄԻՆ

ԻՐ ԿԵԱՆՔՆ ՈՒ ԱՐԿԱԾՆԵՐԸ

Անգլերէն բնագրէն թարգմանեց

Յ. ԽԱՇՄԱՆԵԱՆ

Հայ ազատագրական շարժման ռահվիրայ մեծ հայրենասէրին խռովայոյզ կեանքին արկածալից դրուագները։

500 էջ,— Մաքուր տպագրութիւն, լաթակազմ։ Գին՝ 12 Ն. Ֆ.։

Դիմել՝

Librairie H. SAMUELIAN
51, Rue Mr.-le-Prince, PARIS (6e)
C. C. P. Paris 1278-35

### Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ստիպողաբար խմբական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէի եւ խումբերու ընկերները։

ԱՄԵՐԻԿԱՅԷՆ ՆՈՐ ԺԱՄԱՆԱԾ՝

ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

ՆԵՐԿԱՅ ՊԻՏԻ ԸԼԼԱՅ ԱՅԴ ԺՈՂՈՎՆԵՐՈՒՆ։

ՌՈՍՏՈՄ եւ ՌԱՖՖԻ, Երեքշաբթի (29 Նոյեմբեր) ժամը 8.30ին Րէժան սրճարանը։

ԱՐԱՄ։ Հինգշաբթի 1 Դեկտ. ժամը 8.30ին, Քոլոմպ, կայարանին մօտիկ սրճարանը։

ԱՂԲԻՒՐ ՍԵՐՈԲ, Ուրբաթ 2 Դեկտեմբեր, ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։

ՎԱՐԴԱՆ, Կիրակի 4 Դեկտեմբեր կէսօրէ վերջ ժամը 3ին, սովորական հաւաքատեղին։

Ա. Զ. Դ.

Մոնմորանսիի, Անտիյի եւ Սէն Ռաֆայէլի Հանգստեան Տուներուն մէջ, մօտ ատենէն տրամադրելի անկողիններ պիտի ըլլան, բոլոր այն ծերերը որոնք ցարդ արձանագրուած չեն, պէտք է այժմէն ձեռնարկեն պաշտօնատանց մօտ կատարուելիք ձեւակերպութեանց։

Առ այդ դիմել Աղքատախնամի գրասենեակը, 32, Ռիւ տը Թրէվիզ, Փարիզ (9), պէտք եղած տեղեկութիւնները եւ հրահանգները ստանալու համար եւ ճըշդելու ընտրուած հանգստեան տունը։

ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մուրատ-Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան տարեկան պարահանդէսը, Յունուար 29ին։

×

ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ.— Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան տարեկան խնջոյքը տեղի կ'ունենայ 18 Դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին։ Խրիմեան դպրոցի մէջ (Իսի)։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

— Ըսելիք բան մը ունի՞ք Կոմիտէի ձեր ընկերներուն մասին, հարցուցին :

— Բոլորն ալ գէնքի, իտէալի եւ յեղափոխութեան ընկերներս են, կը սիրեմ զիրենք եւ կը վստահիմ անոնց : Կը հաւատամ թէ երկրին ի նպաստ որոշումները տուած են եւ պիտի տան : Ես ալ երկրին ծառայելու կ'երթամ :

— Պետութեան Նախագահ Գիւրսէլ ձեզ ամբաստանեց նոր յեղափոխութիւն պատրաստելու մեղադրանքով, ի՞նչ կ'ըսէք :

— Այդպիսի հարց մը խնդրոյ առարկայ չէ : Յեղափոխութիւնը մէկ անգամ կատարուած է : Ցիմարութիւն է նոր յեղափոխութիւն ընել : Ճէմալ փաշան ողջամիտ հրամանատար եւ առաջնորդ է : Երկրին նպաստաւոր են իր ձեռք առած բոլոր միջոցները :

— Իտէալի եւ մշակոյթի միութեան կուսակի՞ց էք :

— Ես անձնապէս կուսակից եմ : Ասիկա պայման է : Միայն թէ, օրինագիծը այնպէս պատրաստուեր է որ կազմակերպութեան վերին մարմինը անկախ պիտի ըլլայ եղեր : Ասիկա չըլլար ի հարկէ : Առանց հակակշռի ժողովրդավարութիւն չըլլար : Կառավարութեան մէջ կառավարութիւն չըլլա՛ր :

— Երկրին մէջ եւ երկրէն դուրս գտնուող Թուրքերուն միացումով Մեծ-Թուրքիա մը հիմնելու գաղափարի՞ն ինչ կ'ըսէք :

— Ասիկա երազէն ալ աւելի երազային է : Այս տեսակ բան չի կրնար ըլլալ : Մանուկներն անգամ կը ծիծաղին ասոր : Եթէ Նախակրթարանի տղաքը յղանան ասիկա, զարմանալ ծիծաղելի կ'ըլլայ : Պէտք չէ այս տեսակ ցափռուքներ խորհիլ այսպիսի ատեն մը :

ԷՏԻՐՆԷԻ մէջ տեղաց առաջին ձիւնը : Դեռ կը տեւէ ձիւնամրրիկը :

ՎԱՆԱՅ լճին մէջ «Աքդամար» (հայերէն՝ Աղթամար) բեռնատար շոգենաւը, որ Դատուանէն ոչխար կը փոխադրէր դէպի Վան, ընկղմեցաւ : 1555 ոչխարներէն 64ը խեղդուեցան :

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
ՄԱՐՏ 12ԻՆ
ՍՈՐՊՈՆԻ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

## 30-ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ
ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, 5 Մարտ, 1961, կէսօրէ վերջ ժամը 2·30ին, Սալ տը լա Շիմի :
28պիս, Րիւ Սէն Տոմինիք :

Կը խնդրուի նկատի առնել այս թուականը :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Դպրոցասէրի տարեկան գեղարուեստական ցերեկոյթը՝ Մարտ 26ին :

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը կազմակերպած է Յունուար 8ին, Շարպոնիէի շքեղ սրահներուն մէջ, Լիոնի եկեղեցւոյ ի նպաստ պարահանդէս մը :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

Լիոնի Ցիշատակի Երեկոյին առթիւ ընկերներէ եւ բարեկամներէ 220 Ն· Ֆ· : (Ցանկը առանձին) :

×

Այրի Տիկին Աննիկ Մինասեան իր թոռնիկին Բիւզանդի անդրանիկ զաւկին Էլիզապէթի ծննդեան առթիւ տասը Ն· Ֆ· կը նուիրէ Ս· Թէհլիրեան սրահին :(Ստանալ «Յառաջ»էն) : (Բ· տպագրութիւն) :

## ՆՈՐ ՏԱՐԻԷՆ ԱՌԱՋ

Մեր բաժանորդներէն կը խնդրենք որ կանոնաւոր եւ կանխիկ վճարեն իրենց բաժնեգինները, առանց սպասելու մասնաւոր դիմումի :

Ընկերային եւ այլ տուրքերու վերջին յաւելումները պատճառ կը դառնան որ 1961 Յունուար 1էն, բաժանորդագրութեան եւ հատավաճառութեան պայմանները փոխուին :

Մինչեւ Դեկտեմբեր 31, 1960 վճարում ընողները կրնան բացառաբար օգտուիլ ներկայ պայմաններէն :

Շնորհակալութիւն մեր այն բոլոր բաժանորդներուն որ իրենց պարտաճանաչութեամբ կը դիւրացնեն վարչութեան գործը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼԻ
## Հ.Մ.Ը.Մ.Ի ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
Դեկտեմբեր 10ին, Շաբաթ երեկոյ, ժամը 21էն մինչեւ լոյս :
Սալոն տը լ'Ալամպրայի մէջ
Մանրամասնութիւնները՝ առանձին :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ
## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ
Կազմակերպուած Ֆ· Կապ· Խաչի կողմէ՝
ՀԻՆԳՇԱԲԹԻ, ԴԵԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ

### Ա Զ Դ

Մոնմորանսիի, Անտիյիի եւ Սէն Ռաֆայէլի Հանգստեան Տուներուն մէջ, մօտ ատենէն տրամադրելի անկողիններ պիտի ըլլան, բոլոր այն ծերերը որոնք ցարդ արձանագրուած չեն, պէտք է այժմէն ձեռնարկեն պաշտօնատանց մօտ կատարուելիք ձեւակերպութեանց :

Առ այդ դիմել Աղքատախնամի գրասենեակը, 32, Րիւ տը Թրէվիզ, Փարիզ (9), պէտք եղած տեղեկութիւնները եւ հրահանգները ստանալու համար եւ ճշդելու ընտրուած հանգստան տունը :

ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մուրատ – Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան տարեկան պարահանդէսը, Յունուար 29ին :

×

ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ.— Սեբաստիոյ Դաւրայի Հայր· Միութեան տարեկան խնջոյքը տեղի կ'ունենայ 18 Դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին : Խրիմեան դպրոցի մէջ (Իսի) :

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

ՓԱՐԻԶԻ Հ· Յ· Դ· Շրջ կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ երեկոյ (3 Դեկտեմբեր) ժամը 20·30ին Մշակոյթի Տան Ս· Թէհլիրեան սրահին մէջ : 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ :

ՕՐԱԿԱՐԳ.— Հ· Յ· Դ· 31րդ Շրջ· ժողովի օրակարգի խնդիրներու քննութիւն :

Սրահին ջերմութիւնը ապահովուած է :

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ
## ՓՈԽՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Ծնողաց Միութեան կազմակերպած տարեկան Տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ՝
Կիրակի, 11 Դեկտեմբեր

Մանրամասնութիւնները յաջորդով :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի, ժամը 21ին, Քաֆէ Քատէի վերնայարկը :

Կը խօսի Պ· ԳՐԻԳՈՐ ՊԱՀՐԻ :

Նիւթ ունենալով «Քրիստոնեայ եկեղեցիներու միութեան խնդիրը» :

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Նախկին Հայ Արիներու եւ Արենուշներու :

Այս Շաբաթ, ժամը 21էն մինչեւ լոյս : ՔԼԻՒՊի շքեղ սրահին մէջ,

51, Rue Grignan

Մասնակցութեամբ Մարսէյլի լաւագոյն նուագախումբին, ղեկավարութեամբ

**EDDY TOURNEL**ի

Հայկական տոհմիկ պարեր, հայ արենուշներու կողմէ :

Ճոխ պիւֆէ, մատչելի գիներով եւ թօթիյօն :

Օրուան թագուհի պիտի ընտրուի ամենաշնորհալի եւ վայելուչ օրիորդը, քուէարկութեամբ :

Զանազան հաճելի անակնկալներ :

## Հ. Յ. Դ.
ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ· Յ· Դ· Շրջ· Կոմիտէն ստիպողաբար խմբական ընդհ· ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէի եւ խումբերու ընկերները :

ԱՄԵՐԻԿԱՅԷՆ ՆՈՐ ԺԱՄԱՆԱԾ՝

### ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

ՆԵՐԿԱՅ ՊԻՏԻ ԸԼԼԱՅ ԱՅԴ ԺՈՂՈՎՆԵՐՈՒՆ :

ՌՈՍՏՈՄ եւ ՌԱՖՖԻ, Երեքշաբթի (29 Նոյեմբեր) ժամը 8·30ին Րէժան սրճարանը :

ԱՐԱՄ : Հինգշաբթի 1 Դեկտ. ժամը 8·30ին, Քոլոմպ, կայարանին մօտիկ սրճարանը :

ԱՂԲԻՒՐ ՍԵՐՈԲ, Ուրբաթ 2 Դեկտեմբեր, ժամը 8·30ին, սովորական հաւաքատեղին :

ՓԱՐԻԶ.— Հ· Յ· Դ· «Փոթորիկ» խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 20·30ին, սովորական հաւաքատեղին :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ· Յ· Դ· Շրջ· կոմիտէն ընդհ· ժողովի կը հրաւիրէ բոլոր ենթակոմիտէները եւ խումբերը այս Շաբաթ, ժամը 21ին, Ահարոնեան ակումբը :

Ներկայ կ'ըլլայ.—

ԸՆԿԵՐ Յ· ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ :



Imprimerie Spéciale du journal « Haratch »

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐՔԻՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ՀԱՐՑԸ

Գ.

Թուրքերի պատերազմը Հայաստանի Հանրապետութեան դէմ, Խորհրդ. Ռուսաստանի գործակցութեամբ, մէկ նպատակ ունէր,— ջնջել Սեւրի դաշնագիրը: Եթէ Հայաստանի դաշնակցական վարիչները չպնդէին Սեւրի դաշնագրի վրայ, այսինքն՝ հրաժարէին Թրքահայ դատից եւ բաւականանային միայն ռուսահայկական հողերով, կարծո՞ւմ էք թէ պատերազմ կը լինէր Թուրքերի եւ Հայերի միջեւ: Ի հարկէ, ոչ: Բայց այդ դէպքում ռամկավարները գո՞հ պիտի մնային Դաշնակցութիւնից. պիտի չմեղադրէի՞ն մեզ, որ դաւաճանեցինք Թրքահայ դատին: Անշուշտ, պիտի մեղադրէին:

Միւս կողմից, եթէ Դաշնակցութիւնը անտրտունջ համակերպէր, որ Ախալքալաքն ու Լոռին մնային Վրացիների ձեռքը, Նախիջեւանն ու Ղարաբաղը անցնէին Ազրբէջանին, կարծո՞ւմ էք, որ Դաշնակցական Հայաստանը պատերազմներ կ'ունենար իր հարեւանների հետ: Բնական է, որ ոչ:

Եւ այդ դէպքում ռամկավարները չէի՞ն գրի իրենց թերթերում, թէ Դաշնակցականները ծախեցին Հայաստանի հողերը Վրացիներին եւ Ազրբէջանցիներին: Անշուշտ, կը գրէին:

Եւ, վերջապէս, եթէ Դաշնակցականները այժմու ռամկավարների չափ իմաստուն ու հեռատես լինէին եւ բոլշեւիկեան յեղաշրջման հէնց առաջին օրից միանային բոլշեւիկներին, ընդունէին Բրեստ Լիտովսկի դաշնագիրը, որով ամբողջ Թրքահայաստանը եւ Կարսն ու Արտահանը թողնում էին Թուրքերին, կարծո՞ւմ էք, որ ռամկավարները մեզ ազգադաւ, ոճրագործ չէին համարի: Անտարակոյս, կը համարէին:

Հայաստանի ողբերգութիւնը նրա մէջ չէր, որ երկրի իշխանութիւնը գտնւում էր Դաշնակցականների ձեռքը եւ ոչ, օրինակ, ռամկավարների: Եթէ ռամկավարները լինէին Հայաստանի իշխանութիւնը, հաւանաբար ողբերգութիւնը աւելի մեծ կը լինէր: Հայաստանի դժբախտութիւնն իր աշխարհագրական դիրքն էր եւ քաղաքական դէպքերի առարկայական ծայր աստիճան աննպաստ դասաւորութիւնը:

Եթէ, օրինակի համար, ռամկավարները լինէին Հայաստանի Հանրապետութեան իշխանութիւնը, կարո՞ղ էին խուսափել պատերազմից Թուրքերի եւ բոլշեւիկների հետ, առանց Սեւրի դաշնագրից հրաժարուելու: Չէին կարող:

Հետեւաբար, հետեւանքը պիտի լինէր միեւնոյնը,— Ալեքսանդրապոլի դաշնագիր, որովհետեւ Հայաստանը մենակ, նոյնիսկ ռամկավարների համճարեղ ղեկավարութեան տակ, չէր կարող յաղթական պատերազմ վարել Թուրքերի եւ Խորհրդ. Ռուսաստանի դէմ:

Ալեքսանդրապոլի դաշնագիրը դժբախտ պարտադրանք էր եւ ոչ թէ կամովին կատարուած մի քայլ: Կարելի՞ էր խուսափել Ալեքսանդրապոլի դաշնագրից:

Կարելի էր մէկ պայմանով, Հայաստանի կառավարութիւնը մերժէր ընդունել Թուրքերի վերջնագիրը եւ քաշուէր մէկ կողմ՝ պատահելիքի ամբողջ պատասխանատուութիւնը ձգելով եկող Յեղկոմի վրայ: Բայց այն ժամանակ ի՞նչ տեղի կ'ունենար: Մինչեւ Կարմիր բանակի Հայաստան հասնելը, Թուրքերը կը գրաւէին Էջմիածինն ու Երեւանը, եւ դժուար չէ պատկերացնել, թէ ինչ տեղի կ'ունենար, եթէ Թուրք ասկեարները մտնէին Էջմիածին ու Երեւան: Վերջը Կարմիր բանակը կարող էր հեռացնել Թուրքերին, բայց Արարատեան Դաշտի Հայութիւնը բնաջնջուած կը լինէր: Ալ. Խատիսեան եւ ընկերները հերոս էին, որ քաջութիւնն ունեցան ստորագրելու Ալեքսանդրապոլի դաշնագիրը:

Այս մասին կայ առատ գրականութիւն թէ բոլշեւիկեան, թէ Դաշնակցական վկայութիւններով: Կարդացէք բոլշեւիկ Բորեանի ծանօթ հատորը. կարդացէք Ալեքսանդրապոլի դաշնագիրը ստորագրող Ա. Խատիսեանի նոյնպէս ծանօթ գիրքը, վերջապէս, իմ «Հայաստանի Հանրապետութիւնը»: Եթէ այդ փաստերին ծանօթանալուց յետոյ էլ շարունակէք գրել Ալեքսանդրապոլի դաշնագրի մասին, ինչ որ գրում է ռամկավար պաշտօնաթերթը, նշանակում է անյոյս չարամիտ էք կամ անբուժելի հիւանդ:

Բայց ենթադրենք, թէ Դաշնակցականները դաւաճանօրէն ստորագրեցին Ալեքսանդրապոլի դաշնագիրը, այդ պատճա՞ռ էր, որ Հայաստանին անկեղծօրէն նուիրուած բոլշեւիկները հաշտուէին Դաշնակցականների այդ դաւաճանական արարքին հետ եւ միջոցներ ձեռք չառնէին սրբագրելու Դաշնակցականների յանցանքը:

Ռամկավար պաշտօնաթերթը մեզ յիշեցնում է, թէ հայ բոլշեւիկները մէկից աւելի անգամներ բողոքեցին Թուրքերին՝ Ալեքսանդրապոլի դաշնագրի դէմ, բայց Թուրքերը ականջ չդրին Հայաստանի Յեղկոմի արտաքին գործոց կոմիսար Աղ. Բէգզադեանի սպառնական հեռագիրներին: Ծիծաղելի է: Նախ՝ ինչո՞ւ Բէգզադեանը գործ պիտի ունենար Թուրքերի հետ եւ ոչ թէ Չիչերինը: Չէ՞ որ բացայայտօրէն Մոսկուան էր գործակցողը Թուրքերի հետ: Կարելի՞ է հաւատալ, որ 1920 – 1921ին Թուրքերը համարձակէին Խորհրդ. Ռուսաստանի կամքին հակառակ իրենց ձեռքը պահել հայկական գաւառները:

Ասենք, թէ Դաշնակցականները ապիկար էին, յանցաւոր էին, անարժան էին Հայաստանը վարելու, բոլշեւիկները, որ Հայաստանի իշխանութիւնը խլեցին Դաշնակցականների ձեռքից եւ ռուսական սուիններին վրայ հաստատեցին իրենց իշխանութիւնը, հայ ժողովրդին տուած իրենց խոստումը կատարեցի՞ն:

Ոչ, չկատարեցին: Թուրքերը Հայաստանի Յեղկոմի հետ վարուեցին աւելի մեծ արհամարհանքով, քան Դաշնակցութեան հետ:

Ռամկավար պաշտօնաթերթը պնդում է, որ Հայաստանի ներկայ սահմանները հաստատուած են Դաշնակցութեան ապիկարութեան պատճառով, Ալեքսանդրապոլի դաշնագրով: Յիշեցինք արդէն, որ ամբողջ Թրքահայաստանը եւ Կարսն ու Արտահանը բոլշեւիկները զիջեցին Թուրքերին 1918 թ. Մարտ 3ին, երբ դեռ Հայաստանի Հանրապետութիւն գոյութիւն չունէր:

Տեսանք նաեւ, որ Ղարաբաղ եւ Նախիջեւան, 1920ի ամառը զինու զօրութեամբ գրաւեց Կարմիր բանակը եւ յանձնեց Ազրբէջանին, Ալեքսանդրապոլի դաշնագրից շատ առաջ:

Պատմական փաստ է, որ Ախալքալաքը Թուրքերը յանձնեցին Վրաստանին, հակառակ Ախալքալաքի Հայութեան եւ Հայաստանի կառավարութեան բողոքին: Վրացի բոլշեւիկները, Ստալինի եւ Բերիայի օժանդակութեամբ, աւելի եւս ամրացրին բռնագրաւումը:

Ալեքսանդրապոլի դաշնագիրը, բռնութեան տակ, հաստատում էր բոլշեւիկների եւ Թուրքերի կողմից գծուած սահմանները:

Այնուհետեւ, 1921 Մարտ 16ին, Մոսկուայի ռուս – Թրքական դաշնագրով որոշեցին սահմանները Հայաստանի, Թուրքիայի եւ Ազրբէջանի միջեւ աւելի վատթար պայմաններով, քան Ալեքսանդրապոլի դաշնագիրը:

Եւ վերաջպէս, 1921 թ. Հոկտեմբեր 13ին, Կարսի դաշնագրով, Թուրքիայի եւ Անդրկովկասի երեք հանրապետութիւնների միջեւ եւ Մոսկուայի հովանաւորութեամբ, Հայաստանի, Ազրբէջանի եւ Վրաստանի ներկայացուցիչների հաւանութեամբ վերահաստատեցին Մոսկուայի դաշնագրի պայմաններն ու սահմանագիծը:

Եւ մինչեւ այժմ ահա 40 տարի է, մնում են ի զօրու Թուրքերի եւ բոլշեւիկների կողմից բռնութեամբ գծուած սահմանները Հայաստանի շուրջ: Քառասուն տարի է բոլշեւիկներն են վարում Հայաստանի ճակատագիրը եւ քառասուն կանգուն անիրաւաբար խլուած հող չէ վերադարձուած Հայաստանին:

Եւ իբրեւ արդիւնք այդ անիրաւութեան, ամէն տարի Հայաստանի ժողովրդի մի մասը գաղթում է Ռուսաստանում, որովհետեւ Հայաստանում բաւարար հող չի գտնում տեղաւորուելու:

Թրքահայաստանի հողմացրիւ Հայութիւնը, Սփիւռքում, հալւում ապազգայնանում է, ինչպէս արեւի տակ ընկած ձիւնը, որովհետեւ Հայաստանի սահմանները նեղ են, անբաւարար՝ տեղ տալու տարագիրներին:

Խորհրդային վերջին մարդահամարը ցոյց տուեց, որ Խորհրդ. Միութեան մօտ երեք միլիոն Հայերի տասը տոկոսից աւելին, այսինքն՝ մօտ 300.000 Հայեր, հայերէնը չէին համարում իրենց մայրենի լեզուն, այսինքն՝ լրիւ ապազգայնացել եւ կամ ապազգայնացման ճամբու վրայ են: Նոյնն է պատկերը եւ Սփիւռքում: Կլոր թուով շուրջ կէս միլիոն Հայեր կիսով կամ լրիւ ապահայացել են:

Ռամկավարները պնդում են, թէ ահա քառասուն տարի է Հայաստանը խաղաղութիւն է վայելում խորհրդային տիրապետութեան տակ: Ա՞յս է խաղաղութիւնը: Ազգասպանութիւնը միայն պատերազմո՞վ կը լինի:

Ս. ՎՐԱՑԵԱՆ

(Շար.)

## ԸՆԹԵՐՑՈՂԻՆ ՑՈՒՇԱՏԵՏՐԸ

# "ՄԵՂՔԻ ՔԱՐԸ" (1)

(ԿԱԱԲԱ)

1934 – 1935 տարիներուն «Հայրենիք» ամսագրին մէջ Նշան Պէշիկթաշլեան լոյս կ'ընծայէր Կաաբա քնարավէպը: Նիւթը Ադամ եւ Եւայի, Կայէնի եւ Աբէլի զրոյցն էր: Նախամարդուն պատմութիւնը, կամ Դարերուն Աւանդավէպը, ինչպէս այնքան ուժով եւ բացառիկ գեղեցկութեամբ երգած է Վ. Հիւկօ:

Պատմութեան արշալոյսը եւ ընթացքը կը ներկայացնէ, որուն մէջ կրցած է երեւան հանել մարդկային հոգիին դրական եւ բացասական բոլոր յատկանիշները: «Աբէլին նման մնացինք Կայէններու քարերուն տակ ու Կայէնի նման թափառեցանք»: Նշան Պէշիկթաշլեան, հակառակ իր կամքին, չի կրնար անհաղորդ անցնիլ ներկայ իրականութեան մէջէն, մի միայն անձնատուր՝ իր հոգիի տենչերուն եւ անձնական յոյզերուն: Նիւթը աւանդութեան հետ կապուած էր. բայց միշտ նոր է, միշտ յաւիտենական: Նախանձի զգացումը ոչ մէկ դարաշրջանի յատուկ է, անիկա մարդկային հոգիին անխուսափելի մէկ տարրն է, եւ հետեւաբար արուեստի գործերուն հիմնական եւ միշտ կենդանի նիւթերէն մէկը:

Քսանեւհինգ տարիներ ետք «Մեղքի Քարը» խորագրով, Կաաբան իբրեւ վէպ անգամ մըն ալ լոյս կը տեսնէ, այս անգամ գրքով, Պէյրութի մէջ, Սեւան հրատարակչական տան կողմէ:

Ինչպէս Ռապպի, Սիդոննա եւ Նարդոս քնարավէպերը, այս վերջին գործին մէջ ալ աստուածաշնչական կեանքն է որ Նշան Պէշիկթաշլեանի գրչին կը բերէ ամէն գեղեցկութիւն, ամէն հրապոյր եւ արուեստի նրբութիւն:

---

## ՕՏԱՐ ԷՋԵՐ

# ՔԱՒԱՐԱՆԻ ՀՈԳԻՆԵՐԸ

Հիւանդութիւն մը որ Տոն Ժուանը քանի մը օրուան համար անկողնէն գամեց, իրեն չներշնչեց դէպի առաքինի կեանքի մը վերադարձի գաղափարը, ընդհակառակն, կը խնդրէր իր բժիշկէն շուտով առողջացնել զինքը, որպէս զի կարողանար նոր անառակութեանց ետեւէն վազել...

Իր ապաքինման շրջանին, ժամանցի համար, զբաղեցաւ պատրաստելով ցուցակը բոլոր այն կիներուն զորս գլխէ էր հանած եւ բոլոր այն ամուսիններուն՝ որոնք խաբած էր:

Ցուցակը բաժնուած էր երկու սիւնակներու: Մէկուն վրայ արձանագրուած էր կիներուն անուններն ու անոնց յատկանշական հանգամանքը, իսկ միւս սիւնակին վրայ կային անունները ամուսիններուն եւ անոնց արհեստներուն:

Շատ դժուարութիւն քաշեց վերյիշելու անունները բոլոր այն դժբախտներուն որոնք լքուած ու ապա լքուած էին իր կողմէն, այնպէս որ պատրաստուած ցուցակը այնքան ալ ամբողջական չէր:

Օր մը այդ ցուցակը ցոյց տուաւ բարեկամի մը որ իրեն հիւանդտեսի էր եկած: Ցուցակը կը սկսէր անունովը կնոջ մը, որ իր հոմանուհի ունեցած էր Իտալիա գտնուած շրջանին եւ որ յաւակնած էր յաղթահարելու թէ՝ Տոն Ժուանի հոմանուհին ըլլալէ առաջ հոմանուհին էր եղած պապի մը. ամուսիններու սիւնակին վրայ կար պապին անունը: Այնուհետեւ կային տիրող իշխան մը, դուքսեր, կոմսեր, մարքիզներ եւ նոյնիսկ հասարակ արհեստաւորներ:

— Կը տեսնես, սիրելիս, ըսաւ իր բարեկամին, կը տեսնես, ոչ ոք կրցած է խուսափիլ, պապէն սկսած մինչեւ հասարակ կօշկակարը, չկայ դասակարգ մը որ իր տուրքը վճարած չըլլայ ինծի:

Տոն Թորիպօ — այսպէս կը կոչուէր բարեկամը — քննեց ցուցակը, ապա զայն վերադարձնելով Տոն Ժուանին, ըսաւ անոր յաղթական շեշտով մը.

— Կատարեալ չէ...

— Ի՞նչպէս, կատարեալ չէ՞: Ո՞վ կը պակսի ամուսիններու ցուցակին մէջ:

— Աստուած, պատասխանեց Տոն Թորիպօ:

— Աստուա՞ծ, ճիշդ է, ունեցած կիներուս մէջ կրօնաւորուհի մը չկայ: Շնորհակալ եմ որ յիշեցուցիր ինծի: Լաւ ուրեմն, կ'երդնում ազնուականի անունովս որ ամիս մը չանցած ցուցակիս վրայ պապին անունէն առաջ պիտի կարդաս նաեւ կրօնաւորուհիի մը անունը: Եւ աւելին, կը խոստանամ որ այդ կրօնաւորուհիին հետ, երեքս պիտի ընթրենք այստեղ... Սեւիլլայի ո՞ր մենաստանին մէջ կան գեղեցիկ միանձնուհիներ...

Քանի մը օր ետք Տոն Ժուան գործի անցաւ: Սկսաւ յաճախել եկեղեցիներն ու միանձնուհիներու մենաստանները:

Ծունկի եկաւ շատ մօտիկը այն երկաթէ փեղկերուն, որոնք հաւատացեալներէն կ'անջատէին կրօնաւորուհիները:

Այդտեղ, իր ամբարտաւան ակնարկները կը պտըտցնէր ամօթխած կոյսերուն վրայ այնպէս՝ ինչպէս գայլը կը մտնէ փարախ եւ կը փնտռէ ամէնէն պարարտ գառնուկը՝ զայն յօշոտելու համար:

Շուտով, Նոթր Տամ տը Ռօզէր եկեղեցիին մէջ նշմարեց երիտասարդ միանձնուհի մը, արտակարգ գեղեցկութեամբ, որուն չքնաղ դէմքին վրայ կ'արտացոլար տրտմաթախիծ մելամաղձոտութիւն մը:

Կրօնաւորուհին աչքերը բնաւ չէր վերցներ եւ չէր դիտեր չորս բոլորտիքը: Ամբողջովին կլանուած ըլլալ կը թուէր իր շուրջը կատարուող սրբազան խորհուրդով: Շրթունքները կը շարժէին հեզիկ, եւ դիւրին էր եզրակացնել թէ ան իր ընկերուհիներուն մէջ ամէնէն շատ ջերմեռանդութեամբ աղօթողն էր:

Անոր տեսքը Տոն Ժուանին մէջ արթնցուց հին յիշատակներ: Իրեն թուեցաւ թէ ուրիշ տեղ արդէն տեսած էր այդ կինը, ու սակայն անկարելի եղաւ գիտնալ թէ ո՞ւր եւ ե՞րբ տեսած էր զայն: Իր յուշերուն մէջ նոյնքան դէմքեր կային դրոշմուած որ անկարելի էր չշփոթել:

Երկու օր իրարու վրայ եկաւ այդ եկեղեցին, միշտ տեղաւորուելով երկաթէ փեղկերուն քովիկը, առանց սակայն յաջողելու որ գոնէ անգամ մը քոյր Ակաթ իր աչքերը վեր բարձրացնէր:

Իմացած էր որ միանձնուհին կը կոչուէր քոյր Ակաթ:

Տոն Ժուան սկսաւ ջղայնանալ երբ տեսաւ որ միանձնուհիին հետ հաղորդակցութեան պիտի չկրնար մտնել, քանի որ այս վերջինը խիստ հսկողութեան մը տակ առնուած էր:

Խորհեցաւ որ իր ծրագրին մէջ յաջողելու միակ պայմանը կը կայանար անոր մէջ, որ պէտք էր յաջողէր որ կրօնաւորուհին իր աչքերը վեր բարձրացնելով զինքը նշմարէր: Եւ համոզուած էր թէ՝ անգամ մը որ քոյր Ակաթի ուշադրութիւնը իր վրայ կեդրոնանար, յաղթանակը կիսով չափ շահած պիտի ըլլար:

Ահա թէ ի՞նչ միջոցի դիմեց, գեղանի կրօնաւորուհին ստիպելու համար որ աչքերը վեր բարձրացնէր:

Գնաց ու կանգնեցաւ որքան կարելի էր մօտիկը, եւ երբ ամէն ոք ծնրադիր կ'աղօթէր, օգտուելով առիթէն, ձեռքը երկաթեայ ձողերէն ներս անցընելով, փոքրիկ սրուակի մը մէջ գտնուող անուշահոտ հեղուկը սրսկեց քոյր Ակաթի ոտքերուն առջեւ:

ՓՐՈՍՓԵՐ ՄԵՐԻՄԷ

(26 Շար.)

